Ուրիշ մը նոյնքան խանդավառ, կը մտնէ ամբոխին մէջ ու գովքը կ'ընէ ծախուած երգերուն։

— Այս երգը շատ գեղեցիկ է, օրիորդ, կը խօսի ցրուիչը, հրամեցէք ։

Օրիորդը, առանց դժուարութեան կ'առնէ թերթիկը ու կը ձայնակցի։ Անոր օրինակին կը հետեւին ուրիշներ։ Եւ այսպէս, քանի մը վայրկեանի մէջ երգիչը կը ցրուէ ամբողջ տրցակը ու կ'առնէ ուրիշ մը։

— Ձեզ ըսեր թէ գնեցէք։ Միայն թէ լաւ մտիկ ըրէք եղանակին եւ բառերուն։

Երգչուհին կը մաքրէ կոկորդը, կը չոկէ յօնքերուն վրայ ինկող խոպոպիքները եւ կը սկսի երգեր․— «Եթէ գիտնաս, սիրելիս ···

Ձայնն ու եղանակը ելեկտրականութեան մը պէս կը քաշեն։ Հազիւ վերջացուցած, ամէն մարդ կը պոռայ․— — Մէկ թերթ մը հոս····

Ու քանի մը վայրկեանի մէջ երգի այս թերթիկները ձիւնի պէս հալելով սպառեցան։

Ու այսպէս, քիչ մը ամէն կողմ, պատկերը այս է Փարիզի։ Երգ կը ծախեն։ Երգ կը գնեն։ Երգ կը սորվին։ Ու կ'երգեն։

Այսօր երգի օր է, Հայ Երգի օր։ Սիփան-Կոմիտաս երգչախումբը ղեկավարութեամբ Գ. Ա-լէմշահի՝ պիտի պանծացնէ հայ արուեստը։ Պիտի երգեն հին եւ նոր երգեր։ Պիտի մտնէ մեր ջիղերուն եւ սրտին մէջ։ Պիտի յուզէ ու խանդավառէ մեզ։ Պիտի հիւսէ գովքը հայ տղուն եւ աղջկանը։

Ո՞վ պիտի չուզէր լսել մեր այն գողտրիկ երգերը։ Ո՞վ պիտի չուզէր հրճուիլ, խնդավառուիլ անոնցմով։

Ապրելու նոյնքան կենդանի ազդակ մըն ալ երգը։ Երգով է որ կը ճանչցուին ազգերը։ Ով որ երգ չունի, կը դառնայ տխուր եւ նկուն։

Վա՛յ այն ազգին որ երգ չունի, որ երգել չի գիտեր։

ԾԱՏՈՒՐ ՊԷՐՊԷՐԵԱՆ

## ՔԻՒՐՏ ԴԵՄՈԿՐԱՏ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ ԾՐԱԳԻՐԸ

Ատրպատականի մէջ կազմուած քիւրտ դեմոկրատ կուսակցութիւնը հետեւեալ ծրագիրն է մշակած․—

1.— Իրանի մէջ հաստատուած քիւրտ ազգը ինքնավար եւ ազատ պիտի ըլլայ իր վայրի գործերու ղեկավարութեան մէջ եւ ինքնավարութիւն ձեռք պիտի բերէ Իրանի պետութեան սահմաններուն մէջ։

2.— Ուսումը պիտի ըլլայ քիւրտերէն, վարչական գործերն ալ պիտի կատարուին քիւրտերէն։

3.— Հիմնական օրէնքներու համաձայն, պէտք է չուտափոյթ տեղի ունենան Քիւրտիստանի Նահանգային Խորհուրդի ընտրութիւնները, որպէսզի խորհուրդը հսկողութիւն ունենայ բոլոր հանրային եւ պետական գործերու վրայ։

4.— Պետական պաշտօնեաներն անպայման պէտք է տեղացիներ ըլլան։

5.— Կատարեալ կանոնադրութեամբ մը պիտի որոշուին կալուածատիրոջ եւ հողագործին յարաբերութիւնները եւ ապահովուի ժողովուրդի ապագան ։

6.— Առանձնապէս Քիւրտիստանի դեմոկրատ կուսակցութիւնը ջանքեր պիտի գործադրէ Ատրպատականի մէջ ապրող ցեղերու (ասորի, հայ եւ այլն) միութեան եւ եղբայրութեան ուղղութեամբ։

7.— Քիւրտիստանի դեմոկրատ կուսակցութիւնը ջանքեր պիտի գործադրէ յօգուտ քիւրտ ժողովրդի տնտեսական բարելաւման, օգտագործելով Քիւրտիստանի շրջանի բնական աղբիւրները, զարգացնելով երկրագործութիւնն ու վաճառականութիւնը եւ ծաւալելով կրթական ու առողջապահական միջոցները ։

8.— Մեր ցանկութիւնն է, որ Իրանի սահմաններուն մէջ ապրող ազգութիւնները կարենան ազատօրէն աշխատիլ իրենց հայրենիքի երջանկութեան եւ բարգաւաճման համար։

Կեցցէ ինքնավար ժողովրդավար Քիւրտիստանը ։

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԱՆՕԹՈՒԹԵԱՆ ՎԱԽԵՐԸ կ'աւելնան նաեւ Պալքաններու մէջ։ Պուլկարիոյ նախարարական խորհուրդը որոշեց օրապահիկը կրճատել Մարտ 16էն սկսեալ։ Օրական 400 կամ հացը պիտի զեղչուի 370 կրամի։ Ռումանիոյ պարենաւորման նախարարը, Փարվուլէսքու, յայտարարեց թէ ութ միլիոն բնակիչներ սովի վտանգին առջեւ կը գտնուին քաղաքներու եւ գիւղերու մէջ, այսօրուընէ մինչեւ նոր հունձք (Յուլիս)։ Նախարարը խոստովանեցաւ թէ շրջանի մը մէջ գիւղացիները ստիպուած են խոզկաղին ուտել, ուրիշ գաւառի մը մէջ՝ եգիպտացորեն խառնել զանազան խոտերու։ Ուրիշ նախարար մը հաստատեց թէ շրջաններ կան ուր ամէն օր գիւղացիներ կը մեռնին անօթութենէ։ Կառավարութիւնը կը յուսայ պարէն ճարել գիւղացիներու դիզած մթերքէն եւ արմտիք փոխ առնել Խ. Միութենէն, մինչեւ նոր հունձք ։

32 ԱՊԱՀՈՎԱԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆՆԵՐ պիտի ազգայնացուին, համաձայն Նախարարական խորհուրդի որոշման։ Բաժնետէրերը 3 առ հարիւր չահաբաժին պիտի ստանան։ Օրէնքին ենթակայ են բոլոր առաջնակարգ ընկերութիւնները, — Սէքանէզ, Իւնիօն, Ֆէնիքս, Փաթէռնէլ, Իւռպէն, Էկլը, Սօլէյ եւայլն։

3000 ՀԱՆՐԱՏՈՒՆՆԵՐ պիտի փակուին ամբողջ Ֆրանսայի մէջ։ Նախարարական խորհուրդը այս առթիւ երեք օրինագիծներ քուէարկեց առջի օր, Ազգ. ժողովէն վաւերացուելու պայմանով։ Միեւնոյն ատեն խիստ պատիժներ պիտի տնօրինուին կաւատութեան դէմ։ Անչափահասներու չահագործման համար նախատեսուած պատիժներուն ենթակայ են նաեւ անոնք որ չափահասները կը չահագործեն։ Ջնջուած է հանրակիններուն տոմսեր բաժնելու դրութիւնը եւ խիստ պայքար պիտի մղուի վեներական հիւանդութեանց դէմ։ Ֆրանսայի մէջ հանրատուները առաջին անգամ օրինականացած են 13րդ դարուն, Լուի Թ. ի օրով։

ՈՒՍՈՒՑՄԱՆ ԱԶԱՏՈՒԹԻՒՆԸ նոր սահմանադրութեան Իրաւունքներու յայտարարութեան մէջ արձանագրելու համար բուռն պայքար մը կը մղուէր ատենէ մը ի վեր։ Սահմանադիր ժողովը առջի օր երկար վիճաբանութիւններէ վերջ, 222ի դէմ 321 ձայնով մերժեց ընդունիլ այս տեսակէտը։ Ասով ծանր պարտութիւն մը կրած կ'ըլլան կաթոլիկները, որոնց գլխաւոր հոսանքը, M. R. P. մինչեւ վերջը մաքառեցաւ։ Համայնավարները չատ գոհ են որ ընդունուեցաւ հանրապետական հին բանաձեւը,— «Տէրտէրը ժամը, վարժապետը՝ դպրոցը »։

ՉԸՐՉԻԼ արտակարգ ցոյցերով ընդունուեցաւ Նիւ Եորքի մէջ, համակրական թէ թշնամական։ Կը հաւաստեն թէ 750.000 հոգի խռնուած էին փողոցներուն մէջ, հակառակ անձրեւին։ Երկու հազար հոգի եւ 42 ոստիկաններ հրաւիրուած էին ճաշին։ Մ. Նահանգներու արտաքին նախարարը եւ օգնականը յարմար չտեսան մասնակցիլ։ Թշնամական ցոյցերու առթիւ ձերբակալուեցան 20—22 հոգի։ Նշանատախտակներու վրայ արձանագրուած էին,— «Երրորդ համաշխարհային պատերազմ չենք ուզեր » եւն.։

ՌՈՒՍ ԱՂՋԻԿ մը անհետացած է Փարիզի մէջ, Երեւան ծնած զինուորի մը, Եզեկիէլ (?) Պօղոսեանի հետ, որ կը գտնուէր Պուրկաուի խորհրդային զերիներու կայանը։

ՀՆԴԿԱՍՏԱՆԸ ԱԶԱՏ է Մեծն Բրիտանիայէն բաժնուելու եւ անկախութիւն հռչակելու, յայտարարեց Անգլիոյ վարչապետը, երեսփ. ժողովին մէջ ։

ՄԱՀՈՒԱՆ ԴԱՏԱՊԱՐՏՈՒԵՑԱՒ Ժոռժ Տայրա, Փէթէնի դատական նախարարութեան ընդհ. քարտուղարը, որ ամբաստանուած էր թէ բացառիկ օրէնքներ, յօրինած եւ հայրենասէրներ գլխատել տուած է։

ՔԱՆԱՏԱՅԻ կառավարութիւնը գիշերանց ձերբակալեց Ազգ. ժողովի «յառաջդիմական» անդամներէն մէկը, Ֆրէտ Րօզ որ ամբաստանուած է թէ հիւլէական ռումբի գաղտնիքներ հաղորդեր է խորհրդային գործակալներու։ Ձերբակալուած են նաեւ ուրիշ երեք ամբաստանեալներ, որոնք կ'աշխատէին գիտական հետազօտութեանց բաժնին մէջ։

ԳԵՐՄԱՆ մառէշալ Մօտէլ, որ կը փնտռուէր Դաշնակիցներուն կողմէ, անձնասպան եղած է մէկ տարի առաջ, որպէսզի Ռուսերուն ձեռքը չանցնի։




Le Gérant : H. AGONEYAN

Imprimerie DER AGOPIAN, 17 Rue Damesme - 13e

# Յեղափոխական Շարժումը Հայոց պատմութեան մէջ

Թերեւս կան տեսակէտներ այս նիւթի մասին․ սակայն ես տեղեակ չեմ։ Փորձեցի հայերէն գրականութեան մէջ որ եւ է բան գտնել այդ ուղղութեամբ, ապարդիւն։ Ուստի կը դիմեմ Յառաջի, թերեւս այդ միջոցով կարենամ գիս հետաքրքրող նիւթի աղբիւրը գտնել։ Իսկ եթէ այդպիսին գոյութիւն չունի, այն ժամանակ կ'արժէ մեր թերթերու միջոցով կարծիքներ լսել այդ մասին։

Ամփոփենք նիւթը։

Հայերու ծագումէն, տեղատուութենէն մինչեւ պատմական Հայաստանի մէջ հաստատուիլը, Հայկ Նահապետէն մինչեւ Տիգրան, մեծ եւ փոքրը, Աշոտ Երկաթը, Լեւոններ եւ անոնց թագաւորութեան անկումը։

Բոլոր այս ժամանակաշրջաններու գործողութիւնները կարծէք կը դառնան պատերազմներու շուրջ, պատերազմներ որոնք երբեմն եղած են նուաճողական, երբեմն պաշտպանողական եւ երբեմն ալ ազատագրական։

Այդ գործողութիւնները գրուեցան թէ գրաբար եւ թէ աշխարհաբար եւ կրեցին «Հայոց Պատմութիւն» խորագիրը։

Հայոց փառքի անկումէն վերջ, սկսաւ ողբերգութեան շրջանը․ ստրկացաւ մեր ազգը 600տարի։ Թէեւ բազմաթիւ փորձեր եւ խոստումներ եղան Հայութեան լուծը թեթեւցնելու համար, բայց բոլորն ալ ապարդիւն մնացին։

Այս ժամանակաշրջանը դարձեալ արժանացաւ «Հայոց Պատմութիւն» խորագրին։

Պայմանական կերպով 18րդ դարի վերջերէն մինչեւ 19րդ դարի սկիզբը ընդունինք երրորդ շրջանը, մէջն ըլլալով եւ մեր օրերը։

Երկաթէ շերեփը» նշանաբան ունենալով, Հայութիւն բռնեց մահու կամ ազատութեան ճամբան, խօսքէն, աղերսանքէն անցաւ զէնքի եւ գործի.— Հանդէս եկաւ Հնչակեան կուսակցութիւնը (1887), յետոյ Հ. Յ. Դաշնակցութիւնը (1890)։

Սարգիս Կուկունեանի դնդակը ազդանշան դարձաւ Հայութեան համար։ Իրարու եւեւէ ասպարէզ իջան հայ Գարիբալդիներ՝ Արաբօ, Զաթօ, Սերոբ փաշա, Գէորգ Չաւուշ, Պետօ, Նէվրուզ, Անդրանիկ, Քեռի, Մուրատ եւն. եւն., որոնք ոչ միայն ցնցեցին սար ու ձոր, այլեւ գրաւեցին ամբողջ աշխարհի ուշադրութիւնը։

Յեղափոխութիւնն իր տունը տնկեց Թիֆլիս, արմատները տարածուեցան Կովկաս, Հայաստան, Եւրոպա եւ Ամերիկա, մէկ խօսքով ուր որ մէկ Հայ կայ։ Այս եռացող կաթսային մէջ մկրտուեցաւ ստրուկ Հայը, նորացաւ իր կոպտացած դէմքը, ուղղուեցաւ իր կորացած ողնայարը։

Փոթորիկը փոքրիկ ընդմիջումներով հասաւ մինչեւ 1914, ծագեցաւ առաջին պատերազմը, որուն զոհ գացին մէկ միլիոնէ աւելի Հայեր։

Սկսաւ ռուսական յեղափոխութիւնը՝ Փետրուարեան եւ ապա Հոկտեմբերեան։ Թուրքերը Ռուսաստանի խառնայոյզ վիճակէն օգտուելով, փորձեցին Արարատի ստորոտը հաստատուած ափ մը հայութիւնն ալ մէջտեղէն վերցնել եւ ապա գրաւել Բաքուն։

Հայ ժողովուրդը, գլուխն ունենալով Դաշնակցութիւնը, կուրծք տուաւ դարեւոր թշնամի գրոհին ե ստեղծեց փոքրիկ Հայաստանը։

Հոկտեմբերեան յեղափոխութիւնը յաղթեց, փոխուեցաւ Ռուսաստանի վարչաձեւը որ անդրադարձաւ եւ Հայաստանի կարգուսարքին վրայ։ Դաշնակցութիւնը տեղի տուաւ եւ իշխանութիւնը յանձնեց համայնավար կուսակցութեան։

Ո՞ւր է այս կէս դարէ աւելի ժամանակաշրջանի պատմութիւնը։ Հազարաւոր թերթեր, գրքեր եւ ամսաթերթեր գրուեցան եւ կը գրուին։

Այս գործերու մէկ մասը Հնչակեան կուսակցութիւնը դարձուց իր կուսակցութեան պատմութիւնը, աւելի մեծ բաժին մը ինկաւ Դաշնակցութեան, իսկ վերջին մասին ալ անշուշտ հայ համայնավարները տէր պիտի դառնան։

Ապա ինչո՞վ պիտի լրացնեն Հայոց նորագոյն պատմութեան այս կէս դարէ աւելի ժամանակաշրջանը։

Գէորգ Մարզպետունին կրցաւ միացնել հայ նախարարները յանուն յաղթանակի։ Այսօր Գ. Մարզպետունին ոչ միայն ռուսերէնի կը թարգմանուի, այլեւ բեմադրութեան կ'արժանանայ։ Այդ մեր ազգի պարծանքն է եւ ողջունելի գործ։

Քրիստափոր Միքայէլեանը կրցաւ ի մի համախմբել հայ յեղափոխականները, իր նախնիքներուն սկսած գործը շարունակելու եւ վերջնական յաղթանակին հասցնելու համար։

Հանգի՛ստ քու խիղախ ոսկորներուն, Քրիստափոր, մեռար գաղափարիդ համար, բայց քու սիրած ժողովուրդի մեծ մասը անունդ անգամ լսած չէ։

Դաւիթ Բէկը 7000 Ղարաբաղցի կորիճներով Հաճի Մուստաֆա փաշայի բանակը պարտութեան մատնեց, իսկ անոր ազգակից Սերոբ փաշաներ, Գէորգ Չաւուշներ, Անդրանիկներ եւ նմաններ երեքէն եօթը հոգիով թրքական ուժերը իրար կը խառնէին եւ պարտութեան կը մատնէին։

Դաւիթ Բէկը դարձաւ իր ժամանակի պատմութեան առանցքը․ թերեւս եւ բեմ բարձրանայ, սակայն հանդիստ ձեզ, Սերոբ, Գէորգ Չաւուշ, Մուրատ եւ Անդրանիկ, ձեր մասին Հայոց պատմութիւնը գաղափար անգամ չունի, իսկ Անդրանիկը Հայաստան թաղուելու համար գերեզմանոցի ալ արժանի չտեսնուեցաւ։

Ինչո՞ւ։ Ահա այս «ինչու»ներուն է որ պատասխանել չենք կարող։

«Զկայ չարիք առանց բարիքի»։ Այս պատերազմը շատ բան փոխեց՝ կաս-կարմիրը վարդագոյն դարձաւ, սպիտակը կարմրեցաւ, հայրենիքի գաղափարը բոլորն ալ հարկադրեց ծունկի գալ։ «Միացեալ ճակատ»։

Ազգային Դատի Պաշտպանութիւն» միացեալ ուժերով,—բոլոր անկիւններէն կը լսուին այս ձայները։ Ողջունելի են եւ մէկը, ե՛ւ միւսը, թէ երրորդը եւ թէ չորրորդը։

Հայաստանի մէջն ալ հայրենիքի գաղափարը վերակենդանացաւ, դպրոցներու դռները պիտի բացուին Հայոց պատմութեան առջեւ։ Ուսուցիչը պիտի աւանդէ Հայոց պատմութիւնը, պիտի գայ եւ հասնի մինչեւ 90ական թուականները։ Յետո՞յ, ի՞նչ պիտի պատմէ։ Եթէ չշարունակէ պատմել, աշակերտը հարց պիտի տայ։ Եթէ ուսուցիչը չպատասխանէ, աշակերտը կը մնայ թերուս եւ անտեղեակ իր ժողովուրդի պատմութեան։

Եթէ նորագոյն պատմագիրը պատմութիւն պիտի գրէ առանց մեր յեղափոխական շարժումները արձանագրելու, կ'ըլլայ թերի։

Եթէ մենք եւ մեր նոր սերունդը Հայկ. Դատը պիտի պաշտպանենք, պէտք է գիտնանք անոր ծագման եւ զարգացման պատմութիւնը, հակառակ պարագային հետապնդուած գործը կը դառնայ անգիտակից եւ մեքենական։

Հայ յեղափոխութեան շարժման պատմութիւնը, մնալով այդ յեղափոխութեան աւանդութիւնը, պիտի դառնայ մեր ժողովուրդի պատմութիւն եւ պիտի կրէ «Հայոց պատմութիւն» խորագիրը։

Հայ յեղափոխութեան Օրը պիտի կատարուի իբրեւ հայ ազգային յեղափոխութեան տօն, այնպէս ինչպէս Ֆրանսական յեղափոխութեան տօնը Ֆրանսացի ժողովուրդին համար է։

Ուրիշ ճանապարհ չկայ։ Կիրքերու եւ գոյներու զոհ դարձնել մեր յեղափոխութեան պատմութիւնը, կը նշանակէ խաբել նոր եւ ապագայ սերունդը, աղաւաղել այդ պատմութիւնը եւ քարեր գլորել անոր ընթացքին առջեւ։

ԲԻՒԶԱՆԴ

# ՄԱՀՏԵՍԻ ՊՕՂՈՍԻՆ ԵԶՆԵՐԸ

Մահտեսի Պօղոսը Կարնոյ շրջաններէն զոյգ մը խոշոր եզներ գնեց ու բերաւ գիւղ։ Այդ եզները պահեց հարսի մը պէս ու կ'ըսէին թէ, անոնց վրայ փոշի կարելի չէր տեսնել։ Այնքան խնամք ու հոգատարաւ այդ եզներուն որ, մարդիկ կը փսփսային իրարու։

— Այս եզները հողին պէտք չէ զարնել... մե՛ղք են։

Երուսաղէմէն բերուած մասնաւոր յուլունքներ շարուած էին այդ եզներու լայն ճակատէն ու գունաւոր ծոպեր՝ կախուած անոնց հաստ վիզերէն։ Ու երբ եզները դուրս ելլէին՝ փողոցներէն անցնող մարդիկ, հողէ դիմագծով ու կնճռոտ ճակատներով, կը դիտէին զանոնք, կը նայէին անոնց հսկայ հասակին ու արեւին տակ փայլող կեռասագոյն թաւիշեայ մորթին։ Ու կը սկսէր գովքը անոնց՝ հետաքրքիր գիւղացիներէ։

— Հէքեաթի մէջէն ելած են։—Եզ չեն, այլ երկու լեռներ։— Երկու եղբայրներու կը նմանին։ — Աստուծոյ աչքը այս եզներուն վրայ...

— Երկու թրքական գիւղեր կ'արժեն, կ'ըսէր Քամար-Դաւօն։

— Սուլթանի կնկան հետ չեմ փոխեր, կը յարէր Պօղոյ-Կիրօն։ Ու գիւղացիներ, տախտակեայ ժիր ձեռքերով, կը մօտենային եզներուն, կը զննէին անոնց ակռաները, կը շփէին եզներուն կողերը, կռնակը, ճակատը, պոչը եւ եղջիւրները։

Նոյնիսկ, հեռաւոր գիւղերէ մարդիկ կուգային, Մահտեսի-Պօղոսին եզները տեսնելու համար։

Եզներու գովքը հասաւ մինչեւ ծովերէն անդին, հեռաւոր Ամերիկա։

Մահտեսի-Պօղոսը ուրախութեան արցունքներով գրեց նամակ մը՝ իր երկու տղոց, Պոսթըն. — «Երկու եզ առի, երկու եզ առի որ՝ չէք կրնար նայիլ, եթէ գաք, կը տեսնէք»...

Տղաքներն ալ, երբ հօրը նամակը կարդացին, ուրախացան եւ քաջալերական գրեցին։

✕

Գիւղական առաւօտը կը սկսէր աքլորներու կանչերով ու արտերուն գլուխը կը վերջանար եզներու հեւքով։

Մահտեսի-Պօղոսը իր երեք զոյգ եզներով ու մշակներով կ'երթար ու կուգար արտին մէջ՝ թեթեւ երգ մը շրթունքին։ Մաճը ձեռքին, հոգեթով կը դիտէր յուռթի հողին ալեակները իր արօրի խոփին վրայ։ Ու երբեմն կը լսուէր աղօթք հօտող իր մետաղեայ ձայնը.—Մէջ էկօ, Թելօ, քաշէ, Տօղան... Ան կը խօսէր իր եզներուն ու շատ քնքուշութեամբ կը վարուէր անոնց հետ։ Անկարելի էր որ փայտ բարձրացնէր իր եզներուն վրայ,— ինչպէս կ'ընէին Թուրք գիւղացիները փայտերը իջեցնելով եզներու գլխուն եւ իրիկունը, դրեթէ անօթի, կապելով մսուրին։ Հողի մարդ, Մահտեսին գիտէր կառավարել կենդանիները, իր ձայնը բաւական էր որ եզները ուղիղ քալէին ու ակօսները պառկած ըլլային շիտակ։

Արդար ու բարի, Մահտեսի Պօղոսը փարած էր հայրենի հողին, առուին ու ծառերուն։ Արտերը, դաշտերը, առուները, աղբիւրներն ու եզները միակ տեսարաններ չէին Մահտեսիին աչքին, այլ մէկ-մէկ քանդակ, իր մազոտ կուրծքին տակ, հոգի եւ կեանք՝ իր աչքերուն լոյսին մէջ։ Ու քանի դարեր, հայ շինականը այդ հողերուն վրայ քրտինքթափած էր, երգ հիւսած ու իր սրտին արիւնը կաթեցուցեր հայ աշխարհի ճամբաներուն վրայ։ Դարերու ձայնն էր, որ Մահտեսի Պօղոսը դուրս կուտար իր արտէն.— Մէջ էկօ, Թելօ, քաշէ Տօղան... Արեւին տակ, լուծերը իրենց վզին՝ եզները կը քաշէին արօրը եւ սամիներու ճռինչ մը կը խառնուէր հովին հետ։

— Այս տարի կալս մեծ պիտի ըլլայ, Ակօ, կը խօսէր Մահտեսին, խօսքը ուղղելով իրեն հետեւող մշակին։

— Մինակ կալիդ մասին կը խօսիս, ուրիշ բան ալ մտածէ...

Մահտեսի-Պօղոսը հասկցաւ Ակոյի միտքը, եւ բարձրաձայն խնդալով պատասխանեց։

— Աշնան, Ակօ, աշնան, քեզ կը ... կարգեմ, հոգ մի ըներ։

Խօսք ու երգ, արօր ու ճռինչ, հող ու ջուր, երկար չտեւեցին սակայն։ Թուրքերը, գիշերով՝ գիւղը շղթայի առած, կը սպասէին արշալոյսին։ Առտուն, արտերու ճամբան բռնող բոլոր գիւղացիները ձերբակալուեցան եւ փոխադրուեցան գիւղէն։ Ա՛լ մարդ չմնաց։ Երդիքներէն ծուխ չէր ելլեր, դուռները գոց, մարդիկը տարուած ու գիշերը, Ապրիլի զարհուրելի գիշերը, ծանր կը նստէր գիւղին վրայ, անձայն ու մեռելային։ Անտէր շուներ ու կատուներ կը թափառէին հոս ու հոն, փնտռելով իրենց տէրերը, խոնարհ ու արի աչքերով Հայերը... ։

Նախճիր ու կոտորած, թալան ու աքսոր, հրդեհ ու արհաւիրք՝ բռնած էին հայկական գիւղերը եւ ժողովուրդ մը արիւն կը փսխէր կիրճերու մէջ կամ արաբական անապատներու կիզիչ արեւին տակ։ Աստուածները խաբած էին հայ ժողովուրդը ու արեան ծովի մէջ նետած զայն։ Մեր արիւնը այնքան անուշ թուեցաւ շաներուն՝ որ ոչ միայն զարնողը խմեց ու յղփացաւ, այլեւ դիտողները, արդարութեան աւետարանը ձեռքերէն եւ Քրիստոսի խաչը կուրծքերէն կախած... դահիճներ, արիւնլուայ ձեռքերով ու «սիլինտր» գլխարկներով։

Թալանի օրերուն, Հաճի Մահմէտ յափշտակած էր Մահտեսի-Պօղոսին եզները,— Թելօն ու Տօղանը։

Ու ամէն անգամ որ եզները ազատ ըլլային դուրս ելլելու՝ գլխիկոր, փշրտալով կ'երթային իրենց նախկին տիրոջ դրան առջեւ, կը քերուէին պատերուն, կը պոռային ու կ'ուզէին ներս մտնել, բայց դուռը գոց էր։

Կը դառնային Մահտեսի-Պօղոսին տան շուրջը, սակայն բոլոր դուռները գոց էին, ու ներսէն ձայն չկար։

Նոր տէրը, Հաճին, ինքն ալ իմացաւ մշակներէն որ իր յափշտակած եզները, ամէն օր, իրենց գլուխները կ'ուղղեն դէպի Հայոց թաղերը, դէպի նախկին տիրոջ տունը։

— Ալլահ, Ալլահ, չտեսնուելիք բան է սաիկայ, կը մտածէր ինքն իրեն։ Եւ եզները միշտ շարունակեցին նոյն կրկնութիւնը։ Հաճին օր մը իր մշակները կանչեց ու ըսաւ անոնց։

— Ո՞վ կեր կուտայ այս եզներուն։

— Ես, պատասխանեց Մամօն։

— Անօթի չե՞ս ձգեր այս եզները։

— Ոչ, աղա, միւսներէն աւելին կուտամ որ ուտեն։

— Հապա ինչո՞ւ կը նիհարնան այս եզները։

— ......................

Տօղանն ու Թելօն, օրէ օր, սկսան բարկնալ, ու ամէն օր, առիթը եկած պահուն, կ'երթային իրենց հին տիրոջը դուռը, եւ շողիքը բերանին, կը սպասէին որ Մահտեսի-Պօղոսին տան դռները բացուէին ու իրենք, դերի տարուած եզները, երթային իրենց սիրած մսուրին քով։ Ու երբ Թուրք մշակը, փայտը ձեռքին, կուգար զիրենք Հաճիին տունը տանելու, եզները, յամառ ու արցունքոտ աչքերով, կ'ընդդիմանային, մինչեւ որ իրենց կռնակին վրայ փայտը կտոր-կտոր ըլլար։

Հաճին կ'ուզէր այդ եզները պահել այնպէս, ինչպէս որ պահած էր Մահտեսի-Պօղոսը, բայց, իր աչքին անոնք ամէն օր նիհար կ'երեւային ու կը գուշակէր որ Հայուն այդ եզները, օր մը, պիտի իյնան հիւանդ ու հիւծած։

— Մարդու նման խելք ունին, աղա, կ'ըսէր Մամօն Հաճիին։— Ի՞նչպէս։

— Ամէն օր իրենց նախկին տիրոջը դուռը կ'երթան։

— Բան մը կայ, Մամօ, բան մը կայ՝ որ չենք հասկնար...։

Եզներն անգամ կը փախչէին Թուրքի տունէն։

Թ. ՀԵՐՕՅԵԱՆ

